ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԻ
ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 1 (55)

ՀԽՍՀ ԺԿԽ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ—1939

# ԱԳԻՏԱՏՈՐԻ

# ԲԼՈԿՆՈՏ



**№ 1 (55)**



Հայկական ԽՍՀ ԺԿԽ Հրատարակչություն—
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1939

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## 15 ՏԱՐԻ ԱՌԱՆՑ ԼԵՆԻՆԻ—ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



## ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՀԶՈՐ ԶԵՆՔԸ



Պատ. խմբագիր՝ ԳՐ. ՍԻՆԱՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 10 հունվարի 1939 թ.
Ստորագրված է տպագրութ. 16 հունվարի 1939 թ.



# ՄԵՆՔ ՀԱՂԹԱՆԱԿԵԼ ԵՆՔ ՀԱՎԱՏԱՐԻՄ ՄՆԱԼՈՎ ԼԵՆԻՆԻԶՄԻՆ

Մոտենում է Վլադիմիր Իլյիչ Լենինի մահվան տասնհինգերորդ տարեդարձը: Լենինի անունը նշանակում է մի ամբողջ եպոխա մարդկության զարգացման ասպարեզում: Բոլշևիզմի հիմնադիր, բանվորների ու գյուղացիների՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետության կազմակերպիչ, պրոլետարական հեղափոխության մեծ հանճար Լենինն սկիզբ դրեց պատմական նոր եպոխայի: Նրա լավագույն աշակերտ ու զինա-

կից Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի առաջնորդությամբ մեր յերկիրն անշեղ կերպով առաջ է գնում լենինյան ուղիով: Անցած տասնհինգամյակի մեծագույն հանրագումարն է հանդիսանում սոցիալիզմի հաղթանակը մեր յերկրում, լենինյան նախանշումների ստեղծագործական իրագործումը:

Կոմունիզմի համար մղած հերոսական պայքարում մի պայծառ ջահ է Լենինի ուսմունքը կուսակցության մասին:

«...Լենինը մարքսիզմի պատմության մեջ առաջինը մշակեց ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ, որպես պրոլետարիատի ղեկավար ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ, որպես պրոլետարիատի ձեռքին հիմնական ԶԵՆՔԻ, ՈՒՍՄՈՒՆՔԸ. առանց որի հնարավոր չէ հաղթել պրոլետարական դիկտատուրայի համար մղվող պայքարում»*):

Լենին-Ստալինի մեծ կուսակցությունը արմատապես վերակառուցեց հասարակական հարաբերությունները յերկրագնդի մեկ վեցերորդ մասում, ի մի համախմբեց սոցիալիզմի յերկրի միլիոնավոր աշխատավորներին իր հաղթական դրոշի տակ և

*) «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց» եջ 70: Պետհրատ, 1938:



ԽՍՀՄ վերածեց միջազգային պրոլետարիատի հարվածային բրիգադի:

Լենինը բոլշևիկյան կուսակցությունը զինել է առաջավոր հեղափոխական թեորիայով: Բոլշևիզմի հիմնադիրներն ու առաջնորդներ Լենինին ու Ստալինին է պատկանում Մարքս-Էնգելսի հեղափոխական թեորիայի պահպանման, ամրապնդման ու հետագա զարգացման պատմական ծառայությունը:

Լենինի համար մարքսիզմը մի սառած, մեռած ուսմունք չէ, դոգմա չէ, այլ մշտապես կենդանի, հեղափոխական մի ուսմունք է, որն անընդհատ զարգանում է և հարստանում հեղափոխական պայքարի նոր փորձով, պատմական զարգացման ամբողջ ընթացքով: Թեորիան ստուգվում է հեղափոխական պրակտիկայով, որն իր հերթին, հարստանալով առաջավոր գիտությամբ ավելի ևս մեծ հզորություն ու գործունություն է ձեռք բերում:

«Մենք բնավ Մարքսի թեորիայի վրա չենք նայում,—գրում եր Լենինը դեռ 1899 թվին—որպես մի ավարտված և անձեռնմխելի բանի վրա. մենք, ընդհակառակը,

համոզված ենք, վոր այդ թեորիան դրել է միայն անկյունաքարերը այն գիտության, վոր սոցիալիստները ՊԱՐՏԱՎՈՐ են առաջ մղել բոլոր ուղղություններով, յեթե նրանք չեն ուզում կյանքից հետ մնալ»*):

Հեղափոխական թեորիայի գանձարանի մեջ մտցված լենինյան ավանդը կազմեց մարքսիզմի զարգացման ԼԵՆԻՆՅԱՆ ԵՏԱՊԸ: Մարքսի- Ենգելսի -Լենինի ուսմունքը շարունակեց ընկեր Ստալինը: Լենինի մեծ հաջորդը լենինիզմը ստեղծագործորեն զարգացրեց, այն հարստացրեց նոր դրույթներով և դրանով իսկ բոլշևիկյան կուսակցության ու միլիոնավոր աշխատավորների ձեռքը ամենաուժեղ զենքը տվեց կոմունիստական հասարակություն կառուցելու գործում հետագա պայքար մղելու համար:

«Առանց չափազանցության կարելի յե ասել, վոր Ենգելսի մահից հետո մեծագույն թեորետիկ Լենինը, իսկ Լենինից հետո՝ Ստալինը և Լենինի մյուս աշակերտ-

*) Լենին, Երկ., հ. II, եջ՝ 492 (ռուս. հրատ.).



ները միակ մարքսիստներն եյին, վոր առաջ եյին մղում մարքսիստական թեորիան և այն հարստացրին նոր փորձով՝ պրոլետարիատի դասակարգային պայքարի նոր պայմաններում:

Յեվ հենց այն պատճառով, վոր Լենինն ու լենինյանները առաջ մղեցին մարքսիստական թեորիան, հենց այդ պատճառով լենինիզմը հանդիսանում է մարքսիզմի հետագա զարգացում, մարքսիզմ՝ պրոլետարիատի դասակարգային պայքարի նոր պայմաններում, իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների եպոխայի մարքսիզմ, յերկրագնդի մեկ վեցերորդ մասում սոցիալիզմի տարած հաղթանակի եպոխայի մարքսիզմ»*):

Ընկեր Ստալինը իր «Լենինը, վորպես ՌԿ(բ)Կ կազմակերպիչ ու առաջնորդ» հոդվածում մատնանշել է, վոր Լենինն ու լենինյանները— դրանք այնպիսի հեղափոխականներ են, վորոնց խոսքը յերբեք չի բաժանվում գործից: Նրանք ղեկավարվում են հեղափոխական թեորիայով և

*) «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց», եջ՝ 481, Պետքաղհրատ, 1938 թ.:

հենվում են գործնական հեղափոխական փորձի վրա։

Լենինը, ամենահամախմբված և կոփված կուսակցության, բոլշևիկների կուսակցության, այդ կազմակերպիչն և առաջնորդը իր մեջ միացնում էր հսկայական թեորեթիկական ուժը քաղաքական ամենաընդարձակ մտահորիզոնի և բազմակողմանի գործնական փորձի հետ։

Լենինը մարքսիստական գիտությունը հարստացրեց սոցիալիստական հեղափոխության նոր, ավարտված թեորիայով, առանձին յերկրներում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության, նրա հաղթանակի պայմանների, նրա հաղթանակի հեռանկարների թեորիայով։

Լենինի մահից հետո անցած 15 տարիները լենինյան գաղափարների հետագա հաղթանակի ու զարգացման տարիներ են յեղել։ Մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության վերաբերյալ լենինյան մեծ յեզրակացությունը բազմակողմանիորեն—թեորիապես ու գործնականապես—մշակեց ընկեր Ստալինը։ Նրա ղեկավարությամբ կուսակցությունն անց է կացրել յերկրի սոցիալիստական ինդուստրացումը և լուծել է սոցիալիստական հեղափոխու-



թյան կարևորագույն և ամենադժվար խնդիրներից մեկը, այն է՝ հաջողեցրել է գյուղացիության հիմնական մասսաների անցումը դեպի սոցիալիստական ուղին համատարած կոլեկտիվացման և կուլակության՝ մեր յերկրում կապիտալիստական այդ վերջին դասակարգի լիկվիդացիայի հիման վրա։

«Այդ ամենախոր հեղափոխական հեղաշրջում էր, մի թռիչք հասարակության հին վորակական կացությունից դեպի նոր վորակական կացությունը, մի հեղաշրջում, վորն իր հետևանքներով 1917 թվականի հոկտեմբերի հեղափոխական հեղաշրջմանը հավասար նշանակություն ուներ»*)։

Ստալինը շարունակեց զարգացնել Լենինի ուսմունքը պետության մասին։ Նա ցույց տվեց, վոր ժամանակակից պայմաններում պետության հարցը նոր ձևով է ծառանում, վոր այժմ առաջին պլանն է քաշվում խորհրդային քաղաքացիների կյանքը պահպանելու, խորհրդային յերկրի գույքն ու տերիտորիան կապիտալիստական շրջապատումից պաշտպանելու ֆունկցիան, վոր անհրաժեշտ է ամեն կերպ ամրապնդել խոր-

*) *«Համկ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց»*, եջ՝ 411, *Պետքաղհրատ*, 1938։

հրդային պետությունը, որը ապահովում է ԽՍՀՄ-ի հետզհետե անցումը դեպի կոմունիզմի բարձրագույն փազը:

Մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուժը կայանում է նրա կենսական ճշմարտությունը: Ահա թե ինչու Լենին-Ստալինի գաղափարները տիրապետել են մասսաներին և դարձել են անխորտակելի նյութական ուժ, որը մարմնացել է աշխարհիս առաջին սոցիալիստական պետության մեջ:

Աճում ու ամրանում է խորհուրդների յերկիրը Ստալինյան Սահմանադրության արևի տակ: Սոցիալիզմը մեզ մոտ մտել է ամենօրյա կյանքի մեջ, ժողովրդի կենցաղի մեջ: Սոցիալիստական շինարարության յուրաքանչյուր նոր հաղթանակ, մեր պայքարի ամեն մի նոր հաղթություն ամբողջ աշխարհի աշխատավորներին ասում է լենինիզմի հաղթանակի մասին:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխությունը հիմք դրեց մեր յերկրում ժողովուրդների յեղբայրական բարեկամության: Լենինյան-Ստալինյան ազգային քաղաքականության անշեղ կիրառումը անխզելի կապերով ի մի համախմբեց խորհրդային ժողովուրդների մեծ միությունը:



*Այս բարեկամության մեջ է գտնվում խորհուրդների յերկրի անհաղթելիության* գրավականը, ամբողջ աշխարհում լենինիզմի հաղթանակի գրավականը:

Լենինի պատմական ծառայությունը միջազգային պրոլետարիատի հանդեպ այն է, որ նա վերածնեց Մարքս-Ենգելսի հեղափոխական այն ուսմունքը, որ թաղել էին II Ինտերնացիոնալի օպորտունիստները, ջախջախեց օպորտունիզմը և ամբողջ աշխարհի աշխատավորների ձեռքը հզոր զենք տվեց կապիտալիստական ստրկության դեմ մղած նրանց պայքարում: Հոկտեմբերյան Սոցիալիստական հեղափոխությունը մարդկության պատմության մեջ նոր դարաշրջան բացեց, ճեղքեց իմպերիալիզմի ճակատը: Բոլշևիզմի հիմնադիր և առաջնորդ Լենինը ամբողջ աշխատավոր մարդկության առաջնորդն ու ուսուցիչն է: Ահա թե ինչու Լենինի անունը շրջապատված է կապիտալիստական յերկրների միլիոնավոր աշխատավորների ջերմությամբ ու սիրով, աշխատավորներ, որոնք պայքարում են ընդդեմ ֆաշիզմի, ընդդեմ յերկրորդ իմպերիալիստական պատերազմի:

15 տարի առանց Լենինի—դրանք այն տարիներն են, յերբ խորհրդային ժողովուրդը Ստալինի ղեկավարությամբ պայքարել է հանուն լենինյան սկզբունքների հաղթանակի, հանուն սոցիալիզմի հաղթանակի: Մեր կուսակցությունը հաղթանակել է այն պատճառով, վոր նա, ղեկավարվելով Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի ուսմունքով՝ անհաշտ, դաժան պայքար է մղել բոլշևիզմի բոլոր թշնամիների, ժողովրդի բոլոր թշնամիների դեմ:

Լենինի մահից հետո բոլշևիզմի վաղեմի թշնամիները փորձեցին նոր ուժով գրոհել կուսակցության վրա, լենինիզմի վրա: Ընկեր Ստալինի ղեկավարությամբ կուսակցությունը տրոցկիստական-բուխարինյան և բուրժուա-նացիոնալիստական դավաճանների ու մատնիչների դեմ մղած պայքարում պաշտպանեց լենինյան մեծ ուսմունքը, Հոկտեմբերյան Սոցիալիստական հեղափոխության նվաճումները: Բուրժուական հետախուզությունների ստոր լրտեսները, վորոնք մահափորձ են կատարել Լենինի կյանքի վրա, նրա լավագույն աշակերտների



կյանքի վրա, վորոնք վոտնձգություն են կատարել խորհրդային ժողովրդի կյանքի ու նվաճումների վրա յերկրի յերեսից ջնջվել են:

«Սոցիալիզմի բոլոր հաջողությունների մեջ, մեր բոլոր հաղթանակների մեջ մենք տեսնում ենք լենինիզմի ամենահաղթ ուժը: Մենք հաղթանակել ենք հավատարիմ մնալով լենինիզմին: Այդ սովորեցրել և սովորեցնում է մեզ ընկեր Ստալինը» (ՄՈԼՈՏՈՎ):

Ընկեր Ստալինը խորհրդային ժողովրդին սովորեցնում է վոչ մի րոպե չմոռանալ կապիտալիստական շրջապատման մասին, ամեն կերպ բարձրացնել զգոնությունը. Լենինյան-ստալինյան աչալրջությունը և անհաշտությունը դեպի թշնամիները լենինյան ուղիով հետագայում հաջողությամբ շարժվելու պարտադիր պայմանն են հանդիսանում:

15 տարի սրանից առաջ ընկեր Ստալինը լենինյան սգո որերին մեծ յերդում տվեց հավատարիմ մնալու լենինյան սկզբունքներին: Այդ յերդումը անխախտ կերպով կատարում է բոլշևիկների կուսակցությունը:

խորհրդային ժողովրդի կողմից Ստալինի առաջնորդությամբ ձեռք բերած հոյակապ հաղթանակները վկայում են Լենինի ու լենինիզմի անմահությունը, մեր մեծ ժողովրդի անհաղթությունը, ժողովուրդ, որը դեպի կոմունիզմ կատարած իր հաղթարշավի ընթացքում համախմբվել է լենինյան-ստալինյան, բոլշևիկյան դրոշի շուրջը:



# ԼԵՆԻՆԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ

## (ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ՅԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ)

*15 տարի առաջ, յերբ սիրելի առաջնորդի, անմահ Լենինի կորուստով ցնցված ամբողջ յերկիրը թաղված եր խոր սուգի մեջ, ընկեր Ստալինը ԽՍՀՄ Խորհուրդների II համագումարում բոլշևիկյան կուսակցության անունից մեծ յերդում ավեց— սրբությամբ պահպանել Լենինյան պատգամները և կատարել դրանք:*

*Լենինի մահվան օրվանից անցած 15 տարին հանդիսացել են նրա պատգամների հաղթական իրագործման տարիներ:*

*Լենինի գործի մեծ շարունակողը— ընկեր Ստալինը ամենայն անաչառությամբ պահպանեց մարքսիստական-լենինյան հզոր և անպարտելի ուսմունքը և այն ե՛լ ավելի զարգացրեց: Ստալինը պաշտպանեց կուսակցության լենինյան միասնությունը տրոցկիստական - բուխարինական դավաճանների ու մատնիչների դեմ մղվող պայքարում: Ստալինը յերկիրը հասցրեց սոցիա-*

լիզմին։ Սոցիալիզմը ԽՍՀՄ-ում հիմնականում կառուցված է։ Մարդու շահագործումը մարդու կողմից մեզ մոտ վերացված է։ Այսպես է լենինյան պատգամների իրագործման համար մղված պայքարի վիթխարի հանրագումարը։ Այդ հանրագումարը գրի յն առնված Ստալինյան մեծ Սահմանադրության մեջ։

Սոցիալիզմի մեծ հաղթանակները հանդիսանում են լենինյան ուսմունքի հաղթությունը, կուսակցության լենինյան-ստալինյան գլխավոր գծի հաղթությունը։

## ԵՐԿՐԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԻՆԴՈՒՍՏՐԱՑՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՊԼԱՆԸ ԿԵՆՍԱԳՈՐԾՎԱԾ Է ԿՅԱՆՔՈՒՄ

Երբ մահացավ Լենինը, մեր ժողովրդական տնտեսությունն արդեն քիչ-քիչ բուժվում էր ծանր փլուզումից և քայքայումից, որ առաջացրել էյին իմպերիալիստական և քաղաքացիական պատերազմները։ Սակայն նա դեռ չէր հասել նախապատերազմյան մակարդակին։ Խոշոր արդյունաբերությունը տալիս էր նախապատերազմյան արտադրանքի մոտ յերեք քառորդը։ Մեր արդյունաբերությունը հենվում էր հետամնաց և թույլ տեխնիկայի վրա։ Կապիտալիստական սեկտորն արդյունաբերության մեջ կազմում էր դեռևս 20 տոկոս։ Գյուղատնտեսությունն իրենից ներկայացնում էր անհատական մանր գյուղացիական տնտեսությունների ովկիանոս։ Գյուղատնտեսության տեխնիկան հետամնաց էր։ Կուլակների դասակարգը բավականին զգալի ուժ էր ներկայացնում։



Խնդիր էր դրված— խորհրդային յերկրի ամբողջ տնտեսությունը փոխադրել սոցիալիստական խոշոր արտադրության ռելսերի վրա։

Լենինը սովորեցնում էր, որ «սոցիալիզմի միակ նյութական հիմքը կարող է լինել այն խոշոր մեքենական արդյունաբերությունը, որն ընդունակ է վերակառուցելու նաև հողագործությունը»*)։

Հիմնական օղակը, որից կուսակցությունն սկսեց սոցիալիստական շինարարության ծավալումը, յեղավ յերկրի սոցիալիստական ինդուստրացիան։

Տրոցկիստական – բուխարինական վիժվածքներն առանձնահատուկ կատաղությամբ հարձակվում էյին յերկրի ինդուստրացման քաղաքականության վրա։ Նրանք

*) Լենին, Երկ., հ. XXVI, էջ 434.

լավ հասկանում էին, որ սոցիալիստական ինդուստրացման հաջողությունը կվորոշի սոցիալիզմի հաղթանակը ԽՍՀՄ-ում և կկործանի կապիտալիզմի վերականգնման նրանց հույսերը: Կապիտալիստական հետախուզությունների ստոր վարձկանները կատաղի քայքայիչ աշխատանք էին կատարում: Նրանց նպատակն էր՝ քայքայել կուսակցությունը և խորհրդային պետությունը, խախտել յերկրի պաշտպանական հզորությունը, հեշտացնել օտարերկրյա ինտերվենցիան, նախապատրաստել Կարմիր Բանակի ռազմական պարտությունը, վերականգնել կապիտալիզմը ԽՍՀՄ-ում: Նրանք դարձան վնասարարության, դիվերսիաների, լրտեսության կազմակերպիչներ ու կատարողներ:

Լենինի–Ստալինի կուսակցության ղեկավարությամբ խորհրդային ժողովուրդը ջախջախեց թշնամիների հիմնական բները:

Ստալինյան ինդուստրացիան ապահովեց մեր արդյունաբերության փայլուն զարգացումը և մասնավոր կապիտալի վերջնական արտամղումը արդյունաբերությունից: Ստալինյան ինդուստրալիզացիան ապահովեց սոցիալիստական հեղափոխության ա-



մենադժվարին խնդրի լուծումը,— նա հանդիսացավ գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման բանալին, բազա ստեղծեց կոլեկտիվացման հաղթանակի և կուլակության, որպես դասակարգի,— համատարած կոլեկտիվացման հիման վրա,— վերացնելու համար:

Սոցիալիստական ինդուստրալիզացիան հանդիսացավ Լենինյան–Ստալինյան ազգային քաղաքականության վճռական զենքը: Ցարական նախկին գաղութներում, անցյալում հետամնաց ազգային ռայոններում ստեղծված է սոցիալիստական առաջավոր արդյունաբերություն: Այդ ռայոնների գյուղատնտեսությունը ստացավ առաջնակարգ տեխնիկա: Ռուս մեծ ժողովրդի յեղբայրական օգնությամբ մեր ազգային հանրապետությունները չտեսնված տեմպով զարգացնում են իրենց տնտեսությունը և ձևով՝ ազգային ու բովանդակությամբ՝ սոցիալիստական կուլտուրան: Բազմազգ խորհրդային Միությունը—ժողովուրդների անխախտ համագործակցության յերկիր է:

Ստալինյան ինդուստրացումն ապահովեց մեր յերկրի տնտեսական անկախությունը

կապիտալիստական աշխարհից: Նա ապահովեց մեր հայրենիքի տնտեսական և ռազմական հզորության աճը:

## Խ Ս Հ Մ-Ն ԻՆԴՈՒՍՏՐԻԱԼ ՄԵԾ ՊԵՏՈՒԹՅՈՒՆ Է

Դեռ 1937 թվի վերջին ԽՍՀՄ արդյունաբերությունը, նախապատերազմյանի համեմատությամբ, աճել էր ավելի քան յոթն անգամ:

Նավթի հանույթը 1913 թվի 9,2 միլիոն տոննից 1938 թվին հասավ 33,5 միլիոն տոննի: Չուգունի ձուլումը 1938 թվին հասավ 16,3 միլիոն տոննի: Այդ չորս անգամ ավելի յէ 1913 թվի ձուլվածից: Պողպատի արտադրությունը ավելացել է գրեթե 5 անգամ և կկազմի 20,3 միլիոն տոնն: Մեքենաշինության արտադրանքը դեռ 1936 թվին հասավ հսկայական գումարի—20,8 միլիարդ ռուբլու (1926—1927 թվերի գներով): 1913 թվին ցարական Ռուսաստանի ամբողջ մեքենաշինությունը տվել է ընդամենը միայն 748 միլիոն ռուբլու արտադրանք (1926—1927 թվերի գներով): Արդյունաբերական ամբողջ արտադրանքի 80%-ից ավելին մենք ստանում ենք այն



ձեռնարկություններից, վորոնք կամ նոր են կառուցված կամ լրիվին վերակառուցված են ստալինյան հնգամյակների տարիներին:

Մեզ մոտ կառուցված են ինդուստրիայի համաշխարհային գիգանտներ, ստեղծված է հզոր սև մետալուրգիա: Ստեղծված են արդյունաբերության ամբողջ ճյուղեր, վորոնք չկային նախահեղափոխական Ռուսաստանում: Մենք այժմ ունենք մեր տրակտորաշինությունը, կոմբայնաշինությունը, դազգյահաշինությունը, մեր ավտոմոբիլային արդյունաբերությունը, քիմիական արդյունաբերությունը, գյուղատնտեսական մեքենաշինությունը, հզոր ավիացիոն արդյունաբերությունը: Վիթխարի հաջողություններ են ձեռք բերվել ելեկտրոֆիկացիայի ասպարեզում, վորը Լենինը համարում եր յերկրի սոցիալիստական ռեկոնստրուկցիայի հիմքը:

Նախահեղափոխական Ռուսաստանը ելեկտրոֆիկացիայի արտադրության գծով ամենահետին, տասնհինգերորդ տեղն եր գրավում աշխարհում: Ստալինյան յերկու հնգամյակների շնորհիվ ԽՍՀՄ-ն ելեկտրաեներգիայի արտադրության գծով Յեվրոպայում բռնում է յերկրորդ, իսկ աշխար-

հում՝ յերրորդ տեղը:

Ամբողջ արդյունաբերական արտադրանքի մակարդակով մեր յերկիրը Յեվրոպայում գրավում է առաջին տեղը, իսկ աշխարհում՝ յերկրորդ տեղը:

## ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ՀԱՂԹԱՆԱԿԵՑ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Առանց գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման սոցիալիզմի հաղթանակն անհնարին կլիներ:

Լենինն ասում էր,—«Յեթե մենք առաջվա նման նստենք մանր տնտեսություններում, թեկուզ և վորպես ազատ յերկրի ազատ քաղաքացիներ, մեզ, այնուամենայնիվ, անխուսափելի կործանում է սպառնում»*):

Յեվ նա ցույց տվեց, թե անհատական մանր տնտեսություններն ինչպե՞ս փոխադրել սոցիալիստական խոշոր արտադրության ռելսերի վրա, թե գյուղացիական մասսաներն ինչպե՞ս ներգրավել սոցիալիզմի ակտիվ կառուցողների շարքերը:

«Միայն այն դեպքում, յեթե հաջողվի գործով ցույց տալ գյուղացիներին հողի

* Լենին, հ. 20-րդ, էջ 417.



հանրային, կոլեկտիվ, ընկերային, արտելային մշակման առավելությունները, միայն յեթե հաջողվի ոգնել գյուղացուն ընկերային, արտելային տնտեսության ոգնությամբ,—իշխանությունն իր ձեռքին բռնած բանվոր դասակարգը միայն այդ ժամանակ իսկապես կապացուցի գյուղացուն իր իրավացիությունը, իսկապես հաստատուն կերպով ու իսկականորեն իր կողմը կգրավի բազմամիլիոն գյուղացիական մասսան» (Լենին, Յերկ., հ. 24, էջ 579):

Ընկեր Ստալինը գտավ լենինյան այդ պատգամը կյանքում կենսագործելու կոնկրետ ձևը: Այդ ձևը հանդիսացավ գյուղատնտեսական արտելը:

Կոլտնտեսային կարգը հաղթանակեց: Կապիտալիստական վերջին դասակարգը—կուլակությունը—լիկվիդացիայի յե յենթարկվել համատարած կոլեկտիվացման հիման վրա:

Արդյունաբերությունը մեր գյուղատնտեսությանը զինեց ամենահարուստ տեխնիկայով: 1919 թվին Լենինը յերազում էր 100 հազար տրակտորի մասին՝ խորհրդային գյուղատնտեսության համար: 1938

թվին խորհրդային դաշտերում աշխատում էին արդեն 470 հազար տրակտոր, 120 հազար կոմբայն, տասնյակ ու հարյուր հազարավոր ուրիշ գյուղատնտեսական բարդ մեքենաներ: ՄՏԿ-ների տրակտորները և կոմբայնները մշակում են կոլտնտեսային դաշտերը, հավաքում են կոլտնտեսային լիառատ բերքը: Գյուղատնտեսության մեջ մտցվում է առաջավոր ագրոտեխնիկա:

Աճում է կոլտնտեսային դաշտերի բերքատվությունը: 1937 թվին հավաքվեց մոտ 7 միլիարդ փութ հացահատիկ: Հողագործության ամբողջ արտադրանքն ավելի քան յերկու անգամ գերազանցեց 1913 թվի արտադրանքի մակարդակից: 1938 թվի բերքը մի քիչ պակաս եր 1937 թվի բերքից, չնայած Պովոլժեյի և մյուս մի քանի հարևան ռայոնների յերաշտին:

Կոլտնտեսությունները և կոլտնտեսականները հարուստ յեկամուտներ են ստանում: Մեզ մոտ շատ միլիոնատեր-կոլտնտեսություններ կան: Խորհրդային գյուղն ապրում է ունևոր, յերջանիկ, կուլտուրական կյանքով: Այսպես, յերկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման ստալինյան քաղաքականությունն է՛լ ավե-



լի ամրապնդեց և անխախտելի դարձրեց բանվոր դասակարգի դաշինքը գյուղացիության հետ:

## «ԱՄԵՆԱԿԱՐԵՎՈՐԸ, ԱՄԵՆԱԳԼԽԱՎՈՐԸ»

Սոցիալիզմը մտել է ժողովրդի կենցաղի մեջ: Դրա ամենաուշագրավ արտահայտությունը հանդիսանում է խորհրդային մարդու նոր, սոցիալիստական վերաբերմունքը դեպի աշխատանքը:

Սրանից 20 տարի առաջ Լենինը սոցիալիստական մրցության կոչ արեց: Նա այն ժամանակ ասում եր՝ «... 1917 թվի հոկտեմբերյան հեղափոխության ուժը, կենսունակությունը, անպարտելիությունը հենց նրա մեջ է, վոր նա... ջարդում է բոլոր հին խոչընդոտները, փշրում է հնացած կապանքները, աշխատավորությանը հանում է նոր կյանքի ինքնուրույն ստեղծագործության ուղին*):

Լենինի մարգարեական խոսքերը կատարվեցին: Ամբողջ յերկրում ծավալվել է սոցիալիստական մրցությունը, աշխատավորության պայքարը աշխատանքի ամե-

*) Լենին, Յերկ., հ. 22-րդ, եջ՝ 163:

նաբարձր արտադրողականության համար։

Աշխատանքը մեզ մոտ «...ամոթալի և ծանր լուծից, վորպիսին նա համարվում եր առաջ», վերածվել ե «պատվի գործի, փառքի գործի, արիության և հերոսության գործի» (Ստալին)։

Ստալինյան հնգամյակները բերին նոր տեխնիկա, բարեկեցության նոր աճ։ Սոցիալիստական մրցությունը բարձրացավ նոր, բարձրագույն աստիճանի։ Առաջ յեկավ ժողովրդական ստախանովյան հզոր շարժումը։

Ստախանովյան շարժումը ջարդուփշուր ե անում բոլոր հնացած նորմաներն ու տրադիցիաները։ Նա հանդիսանում ե սոցիալիստական տնտեսության առաջավոր մարդկանց պայքարը, վորպեսզի տեխնիկայից քամվի ու ստացվի բոլորը։ Նա իսկական հեղափոխություն ե կատարում արտադրության մեջ։ Ստախանովյան շարժումն աշխատանքի արտադրողականությունը բարձրացնում ե հսկայական բարձրության։ Նա իր հետ արտադրողական ուժերի այնպիսի զարգացում ե բերում, վորը մեր յերկիրն ամենահարուստը կդարձնի աշխարհում։ Նա պայմաններ ե



նախապատրաստում սոցիալիզմից կոմունիզմին անցնելու համար։

Ստախանովյան շարժման մեջ պարունակվում են բանվորների կուլտուր-տեխնիկական այնպիսի վերելքի սկիզբներ, վորը մտավոր և ֆիզիկական աշխատանքի հակասությունների վերացման ճանապարհ ե բաց անում, բանվորի մակարդակը բարձրացնում ե մինչև ինժեներա-տեխնիկական աշխատանք կատարողի մակարդակին։

Ժողովրդական խորքերից դուրս գալով, արդյունաբերական և գյուղատնտեսական աշխատանքի բոլոր ճյուղերն ընդգրկած ստախանովյան շարժումը, դեռևս բոլորովին էլ լրիվին չի ծավալվել։ Մեր ձեռնարկություններում դեռ շատ բան կա, վոր խանգարում ե ստախանովյան շարժման ծավալմանը։ Քիչ բյուրոկրատներ չկան, վորոնք չեն հասկանում ստախանովյան աշխատանքի հեղափոխական դերը, վորոնք արգելակում են ստախանովյան նախաձեռնության զարգացումը։

Մեզ մոտ դեռևս կան մարդիկ, վորոնք չեն ցանկանում ազնվորեն աշխատել, հոգ չեն տանում արտադրության շահերի մասին։ Դրանք՝ լոդրերը, դավողները, գործալքները, թափթփվածները, չվողները.

սոցիալիստական սեփականության հափշտակիչներն են: Նրանք ձգտում են ավելի քիչ աշխատել, իսկ պետությունից ավելի շատ պոկել: Նրանք, աշխատանքային կարգապահության այդ չարամիտ խախտողները, մեր ձեռնարկություններում իջեցնում են աշխատանքի արտադրողականությունը, վնաս են հասցնում պետությանը:

Բանվորները, ինժեներները, ծառայողները ժողովներում և մամուլում ունեցած իրենց յելույթներում պահանջում են, վորպեսզի սուր տարբերություն դրվի ազնիվ աշխատողների և արտադրության կազմալուծիչների միջև: Աշխատանքային ամուր կարգապահությունը — մեր հետագա հաղթանակների կարևորագույն պայմաններից մեկն է:

«Աշխատանքի արտադրողականությունը, — սովորեցնում էր Լենինը, — վերջին հաշվով ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակակարգի հաղթանակի համար... Կապիտալիզմը կարող է վերջնականապես պարտվել և վերջնականապես կպարտվի նրանով, վոր սոցիալիզմը կստեղծի աշխատանքի նոր, շատ ավելի բարձր արտադրողականություն»*):

*) Լենին, Յերկ., հ. XXIV, էջ 342:



# ԽՍՀՄ-Ն ԱՌԱՋԱՎՈՐ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՅԵՐԿԻՐ Է

Մեր յերկիրը հիանալի կադրեր է աճեցրել, վորոնք տիրապետում են առաջավոր տեխնիկային, առաջավոր գիտությանը, անձնվիրությամբ նվիրված են սոցիալիզմին: ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգը, ազատագրված կապիտալիստական շահագործումից, կոլտնտեսային գյուղացիությունը, ազատված կալվածատիրական և կուլակային ստրկությունից, — ստեղծել են իրենց ինտելիգենցիան:

Ծաղկել են Սոցիալիզմի Յերկրի գիտությունն ու արվեստը: ԽՍՀՄ-ն դարձել է ամենաառաջավոր կուլտուրայի յերկիրը:

Կրթության իրավունքը, ինչպես նաև մյուս մեծ իրավունքները, վորոնք նվաճված են խորհրդային ժողովրդի կողմից և գրի յեն առնված Ստալինյան Սահմանադրության մեջ, ապահովված են մեր ամբողջ սոցիալիստական կարգով: Ընդհանուր պարտադիր ուսուցումը, տասնյակ հազարավոր նոր դպրոցները, հարյուրավոր բարձրագույն ուսումնական հաստատությունները ապահովում են ժողովրդական

կրթության ծաղկումը: 33 միլիոն երեխաներ սովորում են դպրոցներում, 600 հազար ուսանողներ ուսանում են ԲՈՒՀ-երում:

Մեր գիտնականները հարստացնում են համաշխարհային գիտությունն իրենց հայտնագործություններով: Խորհրդային բնեռախույզների հետազոտությունները դարաշրջան կազմեցին մեր մոլորակի մասին գիտության զարգացման մեջ: Մեր հերոսական օդաչուների թռիչքները նոր էջ բաց արին համաշխարհային կուլտուրայի պատմության մեջ: Խորհրդային երաժիշտներն առաջին տեղերն են գրավում միջազգային կոնկուրսներում: Խորհրդային թատրոնները լավագույններն են աշխարհում: Կուլտուրական բարգավաճումն ընդգրկել է ամբողջ երկիրը: Մեր անծայրածիր Միության մեջ չկա մի անկյուն, որն ընդգրկված չլինի կուլտուրական հեղափոխությամբ, որի մասին երազում, որին կոչ էր անում Վ. Ի. Լենինը:

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Լենինն ասում էր, որ պրոլետարիատի դիկտատուրան «կլինի դեմոկրատիայի վիթ-



խարի, համաշխարհային-պատմական ընդլայնումը...»*)

ԽՍՀՄ Ստալինյան Սահմանադրությունն ամրապնդեց սոցիալիստական դեմոկրատիզմի—բոլոր քաղաքացիների համար դեմոկրատիզմի հաղթանակը: Սոցիալիստական դեմոկրատիզմի հաղթանակն իր վառ արտահայտությունը գտավ խորհրդային ժողովրդի բարոյական-քաղաքական միասնության մեջ, որը ցույց տվին ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի և Միութենական ու ավտոնոմ հանրապետությունների Գերագույն խորհուրդների ընտրությունները:

Կանայք, երիտասարդությունը, բոլոր քաղաքացիներն առանց ռասայի ու ազգության խտրության, ամենալայն կերպով մասնակցում են արտադրությանը, երկրի կառավարմանը: Դրա մեջ է սոցիալիստական դեմոկրատիզմի հիմնալի նվաճումներից մեկը:

Ինժեներա-տեխնիկական աշխատողների մոտ 20 տոկոսը երիտասարդություն է, արդյունաբերության մեջ ձեռնարկություների և ցեխերի ղեկավարների 26 տոկոսը երիտասարդություն է: Խոշոր արդյունա-

*) Լենին, Երկ., հ. XXIII, էջ 442:

թերության յերիտասարդ ինժեներա-տեխնիկական աշխատողների միայն 40 տոկոսը կանայք են։ ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի դեպուտատների մեջ 284-ը յերիտասարդներ են։ ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի՝ 184 դեպուտատներ և ՌՍՖՍՀ Գերագույն Խորհրդի՝ 157 դեպուտատները կանայք են։

Միայն ԽՍՀՄ-ում, իսկական համաժողովրդական դեմոկրատիայի յերկրում հընարավոր է կանանց, յերիտասարդության արտադրական և հասարակական ակտիվության այսպիսի աճը, նրանց կուլտուրական և քաղաքական մակարդակի այսպիսի արագ աճը, նրանց այսպիսի լայն մասնակցությունը սոցիալիստական շինարարության մեջ։

## ԱՄՐԱՊՆԴԵԼ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Սոցիալիստական դեմոկրատիզմի ծավալումը նշանակում է միաժամանակ նաև խորհրդային պետության ամրապնդումը։ Մեր պետությունը հակոտնյա չէ ժողովրդին, ինչպես կապիտալիստական յերկրներում, այլ արտահայտում ու կատարում է միայն ժողովրդի կամքը։



Լենինն ու Ստալինն ստեղծել են ուժեղ, հզոր խորհրդային պետություն։ Պետության դերը գնալով ավելի յե աճում։ Նա ամրանում է և պետք է ամրապնդվի մինչև սոցիալիզմի լիակատար հաղթանակն ամբողջ աշխարհում։ Պետության այդ դերը բղխում է մարքսիզմ-լենինիզմի թեորիայից։ Մենք ապրում ենք կապիտալիստական շրջապատման մեջ։ Լենինը նախատեսեց, վոր սոցիալիզմի հաղթանակը մեր յերկրում պետք է «առաջ բերի վո՛չ միայն բաշխում, այլև մյուս յերկրների բուրժուազիայի ուղղակի ձգտում՝ ջախջախելու սոցիալիստական պետության հաղթական պրոլետարիատին» (Լենին, Յերկ., հ. XIX, եջ 325)։

Ֆաշիստական ագրեսորներն արդեն մարդկության մեկ յերրորդն քաշել են նոր իմպերիալիստական պատերազմի մեջ։ Անգլիայի և Ֆրանսիայի այսպես կոչված դեմոկրատական յերկրների ոժանդակությամբ գերմանական ու իտալական ֆաշիստներն արյունալի պատերազմ են մղում Իսպանիայում, ճապոնական իմպերիալիզմը մահ ու ավեր է տարածում Չինաստանում։

Միայն ԽՍՀՄ-ն է կանգնած վորպես խաղաղության անխորտակելի ապառաժ (утёс)։

Սկսված յերկրորդ իմպերիալիստական պատերազմը «չի կարող լրջագույն վտանգ չլինել բոլոր ժողովուրդների համար, և, առաջին հերթին, ՍՍՀՄ-ի համար» («Համ. Կ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց», եջ 449)։

Ֆաշիստական պետությունների բլոկը վճռականորեն ռազմական հարձակում է պատրաստում մեր յերկրի վրա։ Ճապոնական ռազմամոլներն արդեն փորձեցին պատերազմի պրովոկացիա առաջ բերել մեր դեմ։ Ինչպես հայտնի յե, արդեն փորձը շատ տխուր վերջացավ խորհրդային գույքի ճապոնական սիրահարների համար։ Խասան լճի շրջանի մարտերում մեր Կարմիր բանակը ցույց տվեց, վոր խորհրդային ժողովուրդը կարող է պահպանել իր սրբազան հողը և վոչ վոքի թույլ չի տա վոտնձգություն անելու սոցիալիզմի նվաճումների նկատմամբ։ Մենք պետք է պատրաստ լինենք ամեն րոպեյին յեռակի հարվածով պատասխանելու ամեն մի թշնամու և նրան ջախջախելու նրա իսկ սեփական տերիտորիայում։ Խորհրդային պետությունն անշեղորեն խաղաղության քաղաքականություն է վարում։

Սակայն, հիշելով կապիտալիստական



շրջապատման մասին, պատերազմի մշտական սպառնալիքի մասին, խորհրդային պետությունն անդուլ կերպով ամրապնդում է իր պաշտպանական ուժը։

Լենինն ասում եր, վոր «անխուսափելի յեն Խորհրդային հանրապետության և բուրժուական պետությունների մի շարք սարսափելի ընդհարումները։ Այդ նշանակում է, վոր տիրապետող դասակարգը, պրոլետարիատը, յեթե միայն նա ուզում է և կտիրապետի, այդ պետք է ապացուցի նաև իր ռազմական կազմակերպությամբ» (Լենին, Յերկ., հ. XXIV, եջ 122)։

Կուսակցության ղեկավարությամբ խորհրդային ժողովուրդը ստեղծել է պաշտպանական հզոր արդյունաբերություն, պողպատ ու բետոն է հագցրել մեր հայրենիքի սահմանները, կոփել է հերոսական, անպարտելի Կարմիր Բանակ, Կարմիր Նավատորմ, մեր փառավոր ավիացիան։

«Թույլ և պաշտպանության համար անպատրաստ յերկրից Խորհրդային Միությունը դարձավ պաշտպանունակության տեսակետից հզոր յերկիր, վորը պատրաստ է ամեն տեսակ պատահականությունների, այնպիսի յերկիր, վորն ընդունակ է մասսայական մասշտաբով արտադրելու պաշտ-

պանության բոլոր ժամանակակից զենքերը և դրանցով մատակարարել իր բանակը՝ արտաքին հարձակման դեպքում» (Ստալին):

Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակը—այդ ժողովրդի բանակն է, նա արյունակցական կապերով կապված է ժողովրդի հետ: Եվ յեթե պայթի պատերազմը, սոցիալիստական հայրենիքին ի պաշտպանություն կկանգնեն ո՛չ միայն Կարմիր Բանակը, այլև խորհրդային ամբողջ բազմամիլիոն ժողովուրդը:

«Հարկավոր է,—ասում է ընկեր Ստալինը,—մեր ամբողջ ժողովուրդը պահել մոբիլիզացիոն պատրաստության վիճակում՝ ռազմական հարձակման վտանգի հանդեպ, վորպեսզի վոչ մի «պատահականություն», մեր արտաքին թշնամիների վոչ մի Փոկուս հանկարծակիի չբերեն մեզ...»:

Կապիտալիստական աշխարհը չի դադարում լրտեսներ ու դիվերսանտներ ուղարկելուց մեզ մոտ: Տրոցկիստական-բուխարինական և բուրժուական-նացիոնալիստական-Փաշիստական բանդիտների դատավարությունները ցույց տվին, վոր չկա այնպիսի հանցագործություն, վորին չդիմեն ժողովրդի այդ կատաղի թշնամիները՝ հաղ-



թանակած սոցիալիզմի յերկրի հզորությունը խախտելու իրենց ձգտման մեջ:

Խորհրդային ժողովուրդն անողոք կերպով ջախջախում և արմատախիլ է անում դավադիրներին, դիվերսանտներին, տեռորիստներին, օտարերկրյա հետախուզությունների գործակալներին:

Մեր յերկիրը հաղթարշավ գնում է կոմունիզմի ճանապարհով:

* * *

Խորհրդային Միությունն,—այն յերկիրը, վորտեղ ընկեր Ստալինի ղեկավարությամբ իրականացված են Լենինի պատգամները—ամբողջ առաջավոր և պրոգրեսիվ մարդկության հույսն է: Լենինի-Ստալինի դրոշն ամբողջ աշխարհում դարձել է միլիոնավորների դրոշը: Յերկրագնդի մեկ վեցերորդ մասում հաղթանակած լենինիզմը կհաղթանակի ամբողջ աշխարհում:

(«Սպուտնիկ Ագիտատորա» № 24)

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ 15-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՈՐԻՆԱԿԵԼԻ ԹԵՄԱՆԵՐ

## 1. ԼԵՆԻՆԸ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ (ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ) ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆ ՈՒ ԱՌԱՋՆՈՐԴՆ Է

*ա) Լենինի հեղափոխական գործունեության սկիզբը:*

*բ) Լենինի պայքարը բոլշևիկյան կուսակցության, նոր տիպի կուսակցության ստեղծելու համար:*

*գ) Լենինն ու բոլշևիկների կուսակցությունը Հոկտեմբերյան Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման համար մղած պայքարում:*



*դ) Լենինն ու բոլշևիկների կուսակցությունը սոցիալիստական շինարարության համար և անդասակարգ սոցիալիստական հասարակություն կառուցելու համար մղած պայքարում:*

*ե) Լենինը որպես մարդ ու որպես գործիչ:*

*Լենինը բարձր սկզբունքայնության քաղաքական գործչի որինակ է, մարտում անվախ, կուսակցության ու ժողովրդի թշնամիների նկատմամբ անողոք:*

*Լենինի իմաստությունը բոլոր հարցերի լուծման ժամանակ, խուճապի նման որևէ բանի բացակայությունը: Լենինի սերը դեպի ժողովուրդը, խոր հավատը դեպի մասսաները:*

*Լենինը մեծագույն համեստության որինակ է:*

*զ) Լենինի ու Ստալինի մեծ բարեկամությունը:*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

### 1. Ի. ՍՏԱԼԻՆ

*Լենինի մասին:* Պետհրատ 1938:

II. Ի. ՍՏԱԼԻՆ.—

*Լենինիզմի հարցերը («Լենինիզմի հիմունքների մասին»։ Գլուխ VIII և «Լենինիզմի հարցերի շուրջը»։ (Գլուխ V)։ 10-րդ հրատ. Պետքաղհրատ։ 1938։*

II. Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.—

*Ճառ, արտասանած Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1937 թ. դեկտեմբերի 11-ին։ ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի կուսհրատ։ 1937։*

*4. Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) Կուսակցության պատմություն։ Համառոտ դասընթաց։ ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի հանձնաժողովի խմբագրությամբ։ Հավանություն է տրվել ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի կողմից, 1938 թ.։ Պետքաղհրատ։ 1938։*

## II. ԼԵՆԻՆԸ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԹԵՈՐԻԱՅԻ ՍՏԵՂԾՈՂ, ԳԻՏՈՒԹՅԱՆ ՄԵԾ ԱՌԱՋՆՈՐԴՆ Է

*ա) Լենինը հեղափոխական թեորիայի նշանակության մասին։*



*բ) Լենինը գիտության մեծ առաջնորդն է։*

*գ) Լենինը վերածնեց մարքսիզմը և շարունակեց զարգացնել Մարքս-Էնգելսի ուսմունքը կիրառելով այն իմպերիալիզմի եպոխայի վերաբերյալ։*

*«Լենինիզմն իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխության դարաշրջանի մարքսիզմն է։*

*Ավելի ճշգրիտ՝ լենինիզմը պրոլետարական հեղափոխության թեորիան ու տակտիկան է ընդհանրապես, պրոլետարիատի դիկտատուրայի թեորիան ու տակտիկան՝ առանձնապես»* (Ստալին)

*դ) Ստալինը մեծագույն թեորետիկ է, Մարքսի, Էնգելսի, Լենինի շարունակողը։*

*ե) «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացը», որը ստեղծված է ընկեր Ստալինի ղեկավարությամբ ու անմիջական մասնակցությամբ մարքսիզմ-լենինիզմի բնագավառում հիմնական գիտելիքների մի հանրագիտարան է։ ՀամԿ(բ)Կ պատմությունը մարքսիզմ-լենինիզմն է գործողության մեջ։*

*զ) Ստեղծագործորեն տիրապետել*

մարքս-լենինյան թեորիային և այն առաջ շարժել:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

**I. Ի. ՍՏԱԼԻՆ.—**

Լենինիզմի հարցերը («Լենինիզմի հիմունքների մասին»: Գլուխ III և «Լենինիզմի հարցերի շուրջը»: Գլուխ I): 10-րդ հրատ: Պետքաղհրատ: 1938:

**II. Ի. ՍՏԱԼԻՆ.—**

Լենինիզմի հարցերը (« Զրույց ամերիկյան առաջին բանվորական պատվիրակության հետ»): 10-րդ հրատ: Պետքաղհրատ: 1938:

**III. Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.—**

Ճառ, արտասանած Մոսկվա քաղ. Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1937 թ. դեկտեմբերի 11-ին: ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի կուսհրատ: 1937:

4. Ընկ. Ստալինի՝ բարձրագույն դպրոցի աշխատողներին Կրեմլում ընդունելիս 1938 թ. մայիսի 17-ի արտասանած ճառը: Պետքաղհրատ: 1938:



5. Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) Կուսակցության պատմություն: Համառոտ դասընթաց: ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի հանձնաժողովի խմբագրությամբ: Հավանություն է տվել ՀամԿ(բ)Կ. ԿԿ-ի կողմից: 1938 թ. (Եզրափակում): Պետքաղհրատ:

6. ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի վորոշումը «Կուսակցական պրոպագանդայի դրվածքի մասին «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացի» լույս ընծայման կապակցությամբ»: Պետքաղհրատ: 1938:

## III. ԼԵՆԻՆԸ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ՈՒ ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐԻ՝ ԱՇԽԱՐՀՈՒՄ ԱՌԱՋԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆ ՍՏԵՂԾՈՂՆ ՈՒ ԿԱՌՈՒՑՈՂՆ Է

ա) Լենինը Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի կազմակերպիչն է:

բ) Լենինը աշխարհում առաջին բանվորա-գյուղացիական պետության կառուցողն է:

գ) Աշխարհում ամենադեմոկրատական Ստալինյան Սահմանադրությունը Լենինի

գաղափարների մարմնացումն է:

դ) Լենինն ու Ստալինը կապիտալիստական շրջապատման մասին:

ե) Կապիտալիստական շրջապատումը և բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության հետագա ամրացման անհրաժեշտությունը:

զ) Խորհրդային ժողովրդի հայրենասիրական զգոնության ու մոբիլիզացիոն պատրաստականության բարձրացումը: ԽՍՀՄ պաշտպանական հզորության ամրացման խնդիրները:

է) Խորհրդային յերկիրը ընկեր Ստալինի ղեկավարությամբ լենինյան ուղիով գնում է դեպի կոմունիզմի լիակատար հաղթանակը:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


I. Վ. Ի. ԼԵՆԻՆ.—
Յերկեր, հատ. XXI, եջ 371—383, 396—408, 429—440:

II. Ի. ՍՏԱԼԻՆ.—
Լենինիզմի հարցերը («Լենինիզմի հիմունքների մասին»: Գլուխ IV): 10-րդ հրատ. Պետքաղհրատ: 1938:





III. Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.—
ԽՍՀՄ Միության Սահմանադրության նախագծի մասին: Զեկուցում խորհուրդների VIII համամիութենական արտակարգ համագումարում 25 նոյեմբերի 1936 թ: ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի Կուսհրատ: 1936:

IV. Ի. ՍՏԱԼԻՆ.—
Կուսակցական աշխատանքի թերությունների և տրոցկիստական ու այլ յերկերեսանիների լիկվիդացիայի յենթարկելու միջոցառումների մասին: Զեկուցում և յեզրափակման խոսք ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի պլենումում 1937 թ. մարտի 3-5-ին: ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի Կուսհրատ: 1937:

5. Ընկ. Իվանովի նամակը և ընկ. Ստալինի պատասխանը: ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի Կուսհրատ: 1938:

VI. Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.—
Հոկտեմբերյան Հեղափոխության 21-րդ տարեդարձը: Զեկուցում Մոսկվայի խորհրդի հանդիսավոր նիստում 1938 թ. նոյեմբերի 6-ին: Պետքաղհրատ: 1938:

7. Խորհրդային սոցիալիստական հանրապետությունների Միության Սահմա-

նադրության (Հիմնական Օրենքը)։ ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի Կուսհրատ։ 1938։

8. ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի վորոշումը «Կուսակցական պրոպագանդայի դրվածքի մասին «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացի» լույս ընծայման կապակցությամբ»։ Պետքաղհրատ։ 1938։

## IV. 15 ՏԱՐԻ ԱՌԱՆՑ ԼԵՆԻՆԻ, ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՄԲ ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ա) Ընկեր Ստալինի մեծ յերդումը լենինյան սգո որերին ԽՍՀՄ խորհուրդների II համագումարում. բարձր պահել և մաքուր պահպանել կուսակցության անդամի մեծ կոչումը. աչքի լույսի պես պահպանել մեր կուսակցության միասնությունը. պահպանել ու ամրապնդել պրոլետարիատի դիկտատուրիան. բոլոր ուժերով ամրապնդել բանվորների ու գյուղացիների դաշինքը. ամրապնդել մեր Կարմիր Բանակը, մեր Կարմիր Նավատորմը. ամրացնել ու ընդլայնել Հանրապետությունների Միությունը. հավատարիմ մնալ Կոմունիստական Ինտերնացիոնալի սկզբունքներին։



բ) Լենինի պատգամների կատարումը ընկեր Ստալինի ղեկավարությամբ։

«Սոցիալիզմը ԽՍՀՄ համար այն է, ինչ արդեն ձեռք է բերված ու նվաճված» (Ստալին)։

գ) Մեր խնդիրները սոցիալիստական շինարարության զարգացման ու ամրապնդման և կապիտալիստական շրջապատման դեմ մղած պայքարում։ Արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, առևտրի, յերկրի պաշտպանունակությունն ամրացնելու խնդիրները. արմատախիլ անելը, մինչև վերջը ջախջախելը տրոցկիստական – բուխարինյան, բուրժուա-նացիոնալիստական և այլ թշնամական ուժեր՝ ֆաշիզմի այդ գործակալներն ինտերնացիոնալ պրոլետարական կապերի ուժեղացումն ու ամրապնդումը, Կարմիր բանակի, Կարմիր Նավատորմի, Պաջը-Ավիաքիմի ուժեղացումն ու ամրապնդումը. մեր ամբողջ ժողովրդը պահել մոբիլիզացիոն պատրաստականության վիճակում։

«ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացը» բոլշևիզմի հզոր գաղափարական զենքն է։

«Տիրապետելով մարքսիզմ — լենինիզմի թեորիային, վորը զինում է հասարակական զարգացման օրենքների գիտությամբ, մեր կադրերը կդառնան իրոք անպարտելի և ավելի ևս հաջող կերպով այդ թեորիայի դրոշի տակ, Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ խորհրդային ժողովուրդը կտանեն դեպի կոմունիզմի հաղթանակը» (ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի վորոշումը «Կուսակցական պրոպագանդայի դրվածքի մասին «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացի» լույս ընծայման կապակցությամբ»):

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

**I. Ի. ՍՏԱԼԻՆ.—**

*Լենինի մասին:* Պետքաղհրատ: 1938:

**II. Ի. ՍՏԱԼԻՆ.—**

*Կուսակցական աշխատանքի թերությունների և տրոցկիստական ու այլ յերկերեսանիներին լիկվիդացիայի յենթարկելու միջոցառումների մասին:* Զեկուցում և յեզրափակման խոսք ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի պլենումում 1937 թ. մարտի 3-5: ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի Կուսհրատ, 1937 թ.



**III. Ի. ՍՏԱԼԻՆ.—**

*Ճառ՝ Կարմիր Բանակի ակադեմիականների ավարտման առթիվ արտասանած՝ Կրեմլի պալատում 1935 թ. մայիսի 4-ին* Պետքաղհրատ: 1938:

4. *Ընկեր Իվանովի նամակը և ընկ. Ստալինի պատասխանը:* ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի Կուսհրատ: 1938:

**V. Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.—**

*Հոկտեմբերյան Հեղափոխության 21-րդ տարեդարձը:* Զեկուցում Մոսկվայի խորհրդի հանդիսավոր նիստում 1938 թ. նոյեմբերի 6-ին: Պետքաղհրատ: 1938:

**VI. Կ. ՅԵ. ՎՈՐՈՇԻԼՈՎ.—**

*Ճառ՝ արտասանած Կարմիր հրապարակում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության XXI տարեդարձի օրը ՍՍՀՄ-ում (1938 թվականի նոյեմբերի 7-ին):* Ռազմհրատ: 1938:

**VII. Ա. Ա. ԺԴԱՆՈՎ.—**

*Լենինյան նախանշանները կենսագործված են:* Ճառ՝ արտասանած 1938 թվականի հունվարի 21-ին Մեծ թատրոնում Վ.

Ի. Լենինի մահվան 14-րդ տարեդարձին նվիրված հանդիսավոր ագո նիստում: ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի Կուսհրատ: 1938:

### VIII. Ա. Ա. ԺԴԱՆՈՎ.—

Ճառ՝ արտասանած ՀամԼԿԵՄ ԿԿ-ի՝ ՀամԼԿԵՄ XX տարեդարձին նվիրված հանդիսավոր պլենումում ակտիվի հետ միասին, Մեծ թատրոնում 1938 թ. հոկտեմբերի 29-ին: Պետհրատ, 1938 թ.:

9. Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) Կուսակցության պատմություն: Համառոտ դասընթաց: ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի հանձնաժողովի խմբագրությամբ: Հավանություն է տվել ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի կողմից, 1938 թ. Պետքաղհրատ: 1938:

10. ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի վորոշումը «կուսակցական պրոպագանդայի դրվածքի մասին «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացի» լույս ընծայման կապակցությամբ»: Պետքաղհրատ: 1938:



## ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՀԶՈՐ ԶԵՆՔԸ

Խորհրդային ժողովրդին մարդկության մեծագույն հանճարի— Վ. Ի. Լենինի աշխատությունների հետ ավելի լայն ծանոթացնելը— մեր ագիտատորների շնորհապարտ խնդիրն է:

Ստորև նյութ ենք տալիս Լենինի հրապարակախոսական մի փոքրիկ հոդվածի մասին: Այդ հոդվածի որինակով պարզորոշ յերևում է թե ինչպես լենինյան ժառանգությունը պայծառ ճառագայթներով լուսավորում է ԱՅՍՈՐՎԱ ՈՐՎԱ հարցերը:

## ԻԼԻՉԻ ԻՐԱԿԱՆԱՑԱԾ ՅԵՐԱԶԸ

Այժմ մեր յերկրում արդյունաբերության նոր ճյուղ է ստեղծվում,— ածխի ընդգետնյա գազիֆիկացիա: Նա պետական մեծ նշանակություն է ստանում: Նա հսկայական ազդեցություն կգործի արդյունաբերության մի ամբողջ շարք ճյուղերի հետագա զարգացման վրա, բարերար կերպով կանդրադառնա յերկրի ամբողջ ժողովրդա-

կան կյանքի զարգացման վրա։

Մարմնավորվում է կյանքում Վ. Ի. Լենինի նվիրական երազը, նրա հանճարեղ կանխատեսությունը։

Ահա այդ հարցի համառոտ պատմությունը։

Սրանից կես դար առաջ ռուս մեծ գիտնական Դմիտրի Իվանովիչ Մենդելեևն առաջին անգամ առաջ քաշեց ածխի ընդերքային գազիֆիկացիայի գաղափարը։ Ցարական Ռուսաստանը թաղեց այդ հիանալի գաղափարը, ինչպես թաղում էր ռուս ժողովրդի ամենատաղանդավոր զավակների մյուս բազմաթիվ գյուտերը, գիտական հայտնությունները և առաջարկությունները։

Հետագայում այդ գաղափարը գրավեց անգլիական նշանավոր քիմիկոս Վիլյամ Ռամսեյի ուշադրությունը։ Նա անգլիական խոշոր հանքատերերից մեկին առաջարկեց պրակտիկորեն կիրառել անմիջականորեն ածխի հանքաշերտերից գազ ստանալու իր մշակած եղանակը։ Այդ սրանից քառորդ դար առաջ էր, 1913 թվին։

Այդ մասին հաղորդագրություն երևաց մամուլում։ Դա չվրիպեց Վ. Ի. Լենինի ուշադիր աչքից։



Իլյիչի պայծառատես միտքն անմիջապես գնահատեց այդ հարցի հսկայական նշանակությունը մարդկության համար, և նա այդ մասին հոդված գրեց՝ «Տեխնիկայի մեծ հաղթանակներից մեկը» (Վ. Ի. Լենին, Երկ., հ. XVI, էջ 368—69)։

Ապշեցուցիչ պարզությամբ, տեխնիկայից սակավ իրազեկ մարդկանց համար մատչելի ձևով Վլադիմիր Իլյիչը բացատրում է այդ գործի նշանակությունը։

«Ռամսեյը հայտնագործել է անմիջականորեն, ածխի գտնվելու վայրում, առանց նրան հողի երեսը հանելու, այդ ածուխը գազ դարձնելու եղանակը...

Ռամսեյի եղանակը քարածխի հանքերը դարձնում է գազ ստանալու վոնց-վոր վիթխարի դիստիլյացիոն ապարատներ։ Գազը շարժման մեջ է դնում գազային մոտորները, վորոնք հնարավորություն են տալիս օգտագործելու քարածխի մեջ պարունակված էներգիայի կրկնակի ավելի բաժինը, քան այդ օգտագործվում է շոգեմեքենաներով։ Գազային մոտորներն իրենց հերթին ծառայում են էներգիան էլեկտրականության վերածելուն, վորը տեխնիկան այժմ արդեն կարող է հաղորդել դեպի հեռավոր տարածությունները։

Ելեկտրական հոսանքի արժեքը կիջնի... մարդկային վիթխարի աշխատանքը, վորն այժմ գործադրվում ե ածուխ հանելու ու փոխադրելու վրա,— կխնայվի: Կարելի կլինի օգտագործել ածխի նույնիսկ ամենաաղքատ և այժմ չարդյունահանվող հանքաշերտերը: Տների լուսավորման և ջեռուցման ծախսերը չափազանց կիջնեն:

Այդ հայտնագործությամբ արդյունաբերության մեջ առաջանալիք հեղաշրջումը հսկայական կլինի»:

Այսպես, դեռևս 1913 թվին Իլիչը յերազում եր ածխի ընդգետնյա գազիֆիկացիայի գործնական կիրառման մասին:

Լենինը գիտեր, վոր «... Այդ հեղաշրջման հետևանքները ժամանակակից կապիտալիստական կարգի ամբողջ հասարակական կյանքում ամենևին ել այն չեն լինի, ինչ վոր այդ հայտնագործությունը կարող ե առաջ բերել սոցիալիզմի ժամանակ:

Կապիտալիզմի ժամանակ, ածխի հանույթով զբաղված միլիոնավոր հանքագործների աշխատանքի «ազատումն» անխուսափելիորեն մասսայական գործազրկություն առաջ կբերի, աղքատության հսկայական աճ, բանվորների դրության վատթարացում առաջ կբերի: Իսկ մեծ գյուտից



ստացվող շահույթն իրենց գրպանը կդնեն Մորգանները, Ռոկֆելերները, Ռյաբուշինսկիները, Մորոզովները...»:

Այնպես պատահեց, վոր ածխի ընդգետնյա գազիֆիկացիայի յեղանակն արդյունաբերության մեջ կիրառելու Վիլյամ Ռամսեյի բոլոր փորձերը կրախի հանդիպեցին: Անգլիական հանքատերերը չեյին ուզում գլուխ ցավեցնել նոր գործով, վոր խոշոր կապիտալ ներդրումներ եր պահանջում: Հանքագործներին շահագործելուց նրանք առանց այդ ել հսկայական շահույթներ եյին ստանում: Այդ նորամուծությունը չեյին ուզում նաև արդյունաբերության կից ճյուղերի տերերը, վորովհետև ընդգետնյա գազիֆիկացիան այդտեղ ել պետք ե հիմնական վերակառուցում առաջացներ: Դրան դեմ դուրս յեկան նաև յերկաթուղային արքաները, վորոնք շատ փող են վաստակում ածխի փոխադրումից:

Իր «Իմպերիալիզմը վորպես կապիտալիզմի ամենաբարձր ստադիա» գրքում Վ. Ի. Լենինը մատնանշում ե, վոր այդ ստադիայում «... մինչև վորոշ աստիճանը չքանում են տեխնիկական, հետևաբար և ամեն մի այլ առաջադիմության դրդապատճառները», «... այնուհետև տնտեսական հնա-

բանվորությունն է առաջ գալիս տեխնիկական առաջադիմությունն արվեստական յեղանակով խափանելու»։ Լենինը հենց այդտեղ ել օրինակ է բերում, «Ամերիկայում վոմն Օուենս շշերի մեքենա հնարեց, վորը հեղափոխություն առաջ բերեց շշեր պատրաստելու գործի մեջ։ Շշերի գործարանատերերի գերմանական կարտելը գնում է Օուենսի պատենտները և դնում է մահուդի տակ, նրանց կիրառումը հետաձգում են» (Լենին, վեցհատորյակ, III հ., եջ 87, հայերեն)։



Վ. Ի. Լենինի ամբողջ կյանքը— այդ պայքար է սոցիալիզմի համար, աշխատավորության, ժողովրդի յերջանիկ, ուրախ կյանքի համար։ Ցեվ Ռամսեյի առաջարկության առթիվ գրած հոդվածում Վլադիմիր Իլյիչը յերազում եր այն մասին, թե ինչպես սոցիալիզմի ժամանակ ածխի ընդգետնյա գազիֆիկացիան «... աշխատանքի պայմանները կդարձնի ավելի առողջապահական, միլիոնավոր բանվորներին կազատի ծխից, փոշուց ու կեղտից, կարագացնի



կեղտոտ, զզվելի արհեստանոցների վերածումը մաքուր, լուսավոր, մարդուն արժանավայել լաբորատորիաների»։

Իլյիչի յերազն իրականանում է։

Այն, ինչը փտած կապիտալիզմի ուժից վեր դուրս յեկավ, հաջողությամբ լուծվում է սոցիալիզմի յերկրում։

1931 թվին ՀամԿ(բ)Կ Կենտկոմը, ընկեր Ստալինի նախաձեռնությամբ, վորոշում կայացրեց ածխի ընդգետնյա գազիֆիկացիայի փորձերը բնական ընդգետնյա պայմաններում լայնորեն դնելու մասին։ Այդ աշխատանքը ղեկավարելու համար 1932 թվին, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի վորոշմամբ, կառավարական հատուկ հանձնաժողով ըստեղծվեց։ 7 տարվա ընթացքում հինգ փորձնական հանքահորեր կառուցվեցին (տարբեր պայմաններում), վորտեղ ստուգվեցին գազիֆիկացիայի 5 մեթոդներ։ Կառուցվեց Գորլովկայի փորձակայանը, վորը 15 ամիս աշխատեց՝ մինչև այսօր առավել հաջող ճանաչված մեթոդի հիման վրա։ Դրանից հետո նույն տեղում կառուցվեց կիսաարդյունաբերական կայան։ Կայանն սկսեց աշխատել 1937 թվի դեկտեմբերից, արդեն տվել է մինչև 30 միլիոն խորանարդ մետր

գազ: Այդ գազով աշխատում են ինչպես հենց այդ կայանի, այնպես և մոտակա կոկսաքիմիական գործարանի շոգեկաթսաների ջեռուցարանները:

Տրոցկիստական – բուխարինական ստորագույն բանդիտները, ֆաշիզմի գործակալները զուր կաշվից դուրս էին գալիս, փորձելով մի կերպ արատավորել ածխի ընդգետնյա գազիֆիկացիայի գաղափարը, և ամեն կերպ վնաս էին հասցնում աշխատանքին, արգելակում էին այն: Նրանք այստեղ էլ մերկացվեցին և վոչնչացվեցին:

Խորհրդային ինտելիգենցիան, խորհրդային տաղանդավոր ենտուզիաստ-գիտնականները և ստախանովական-բանվորները հաջողությամբ կատարեցին տեխնիկական խիստ բարդ խնդիրը:

Այժմ ածխի ընդգետնյա գազիֆիկացիայի գործը փոխադրվում է արդյունաբերական լայն մասշտաբի: Այդ գործի ղեկավարմանն ընկեր Լ. Մ. Կագանովիչն անդուլ ուշադրություն է նվիրում: Վերջերս Լազար Մոիսեյևիչ Կագանովիչը գիտական-տեխնիկական խորհրդակցություն հրավիրեց ածխի ընդգետնյա գազիֆիկացիա-



յի շուրջը: Խորհրդակցությունը կրկին անգամ հաստատեց, վոր ընդգետնյա գազիֆիկացիայի խնդիրը տեխնիկապես արդեն լուծված է: Խորհրդակցությունը նշեց արդյունաբերության այդ նոր, կարևորագույն ճյուղի ստեղծման կոնկրետ ուղիները:

Ընկեր Ստալինին ուղղած նամակում խորհրդակցության մասնակիցները խոստացան իրենց բոլոր ուժերը գործադրել, «վորպեսզի բոլշևիկորեն առաջ շարժվի ածխի ընդգետնյա գազիֆիկացիայի գործը, վորպեսզի մոտակա իսկ տարիներում լիովին կատարվեն Ձեր ցուցումները— ստեղծել ածխի ընդգետնյա գազիֆիկացիայի լուրջ, խոշոր արդյունաբերություն՝ մեր հզոր, սոցիալիստական հայրենիքն անդուլ կերպով ամրացնելու համար»:

Ընդգետնյա գազիֆիկացիայի զարգացումը շատ նոր բան կմտցնի մեր վառելանյութային տնտեսության աշխատանքում, քիմիական, մեքենաշինական և արդյունաբերության բազմաթիվ այլ ճյուղերի աշխատանքում, զգալիորեն կբարձրացնի բոլոր ճյուղերի եներգոսպառազինությունը, զգալիորեն կբարելավի բնակչության կենցաղային սպասարկությունը, կարտահայտվի

տրանսպորտի աշխատանքում, նոր հզոր կենսարար հոսանք կլցնի յերկրի տնտեսության օրգանիզմի մեջ, նրան կդարձնի էլ ավելի հզոր, կավելացնի մեր սքանչելի հայրենիքի արտադրողական ուժերը, հարստությունները:

***

Արդեն 15 տարի յե, վոր Լենինը մեզ հետ չե:

Սակայն Լենինն ապրում է խորհրդային ժողովրդի պանծալի գործերում, սոցիալիզմի նորանոր հաղթանակներում, վորոնք իրագործվում են բոլշեվիկների ղեկավարությամբ, Իլյիչի մերձավորագույն զինակից և բարեկամ, նրա գործի շարունակող Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի գլխավորությամբ:



# ԼԵՆԻՆՆ ԻՆՉՊԵՍ ԵՐ ԱՇԽԱՏՈՒՄ ԳՐՔԻ ՎՐԱ

1920 թվին հանդես գալով Կոմսոմոլի III Համառուսական համագումարում, Վլադիմիր Իլյիչ Լենինն ասում եր, վոր անհրաժեշտ է «... վերցնել մարդկային գիտությունների ամբողջ պաշարը և վերցնել այնպես, վոր կոմունիզմը մեզ մոտ չլինի մի ինչ վոր սերտած բան, այլ դառնա մի բան, վոր դուք ինքներդ եք մտածել, լինի այն յեզրահանգումները, վորոնք անխուսափելի յեն արդի կրթության տեսակետից» (Լենին, Յերկ. ժող., հ. XXV, եջ 389, ռուսերեն):

Ինքը, Վլադիմիր Իլյիչը, ամբողջ կյանքում հետևում եր այդ կանոնին: Ամբողջ կյանքում նա կարդում եր, ամբողջ կյանքում սովորում եր և աշխատում իր վրա:

Լենինը մեծ քանակությամբ գրականություն է ուսումնասիրել գիտության բոլոր բնագավառների վերաբերյալ:

***

Սիստեմատիկ ընթերցանության և գրքի վրա աշխատելու ունակությունները Վլա-

դիմիր Իլիչի մոտ առաջացել են պատանեկական տարիներից։

Դեռ պատանի ժամանակ և նույնիսկ յերեխա ժամանակ Վլադիմիր Իլիչն աչքի յեր ընկնում մեծ ճշտապահությամբ։ Ցուրաքանչյուր գործին, վորին նրան վիճակվում եր ձեռնամուխ լինել, նա վերաբերվում եր արտակարգ լրջությամբ և ուշադրությամբ։ Վլադիմիր Իլիչի կրտսեր յեղբայրը, Դ. Ի. Ուլյանովը, պատմում ե, թե Վլադիմիր Իլիչն ինչպես եր շարադրություն գրում․

«Յերբ տնային շարադրություն եյին տալիս, նա յերբեք դրանք չեր գրում ներկայացնելու նախորյակին, հապճեպորեն։ Գիշերն անց կացնելով դրա վրա, ինչպես այդ անում եր նրա գիմնազիստ ընկերների մեծ մասը։ Ընդհակառակը, հենց վոր հայտնըվում եր թեման և գրելու համար ժամկետ եր նշանակվում, սովորաբար յերկու շաբաթ, Վլադիմիր Իլիչն անմիջապես սկսում եր աշխատել։ Նա քառորդ թերթի վրա կազմում եր շարադրության պլանը՝ ներածությամբ և վերջաբանով։ Այնուհետև վերցնում եր մի թերթ թուղթ, մեջտեղից ըստ յերկարության ծալում եր և թերթի ձախակողմյան լուսացքում անում եր սևա-



գրությունը, տառերն ու թվերը նշանակելով՝ համաձայն կազմած պլանի։ Թերթի աջակողմյան լուսանցքը կամ լայն մասը մնում եր մաքուր։ Դրանց վրա հետագա օրերին նա մտցնում եր լրացումներ, պարզաբանումներ, ուղղումներ, ինչպես նաև գրականության վկայակոչումներ— տես այսինչ տեղ, այսինչ եջ։

Աստիճանաբար, որ–օրի, սկզբնական սևագրության թերթի աջակողմյան լուսանցքները զարդարվում եյին մի ամբողջ շարք նշումներով, ուղղումներով, վկայակոչումներով և այլն։ Այնուհետև, շարունակությունը հանձնելու օրվանից վոչ շատ առաջ, նա վերցնում եր թղթի մաքուր թերթեր և գրում եր ամբողջ շարադրության սևագրությունը, իր նշումներով նայելով զանազան գրքեր, վորոնք նա արդեն նախորոք ձեռք եր բերել։ Այժմ նրան մընում եր միայն մաքուր տետրակ վերցնել և թանաքով մաքուր արտագրել լիովին մշակված և պատրաստի շարադրությունը» (Դ. Ի. և Մ. Ի. Ուլյանովներ, «Լենինի մասին», եջ՝ 6, ռուսերեն)։

Դեռ գիմնազիական տարիներին Վլադիմիր Իլիչը շատ եր կարդում և զբաղվում եր ինքնակրթությամբ։

Նրա փոքրիկ սենյակի գրադարանում մաթեմատիկայի և ֆիզիկայի դասագրքերի կողքին դրված էյին Դարվինի, Լասալի, Բոկլի գրքերը: Այդտեղ էլ կային ռուս պոետների և գրողների— Պուշկինի, Լերմոնտովի, Նեկրասովի, Տուրգենևի, Բելինսկու, Չերնիշևսկու հատորիկները:

Վլադիմիր Իլյիչն ինքնակրթությամբ է՛լ ավելի ուժեղ էր զբաղվում ուսանողական տարիներին: 1888 թվի ձմռանը Կազանում, Կոկուշկինո գյուղից վերադառնալուց հետո, վորտեղ նա աքսորվեց 1887 թվին՝ ուսանողական ժողովի մասնակցելու համար, — Լենինը ձեռնամուխ յեղավ Մարքսի «Կապիտալի» ուսումնասիրմանը: Մարքսի և Էնգելսի յերկերն այն ժամանակ Ռուսաստանում «արգելված գրականություն» էյին: Դրանք շատ դժվար էր ճարել: Վլադիմիր Իլյիչը դրանք ստանում էր անլեգալ կերպով: Դրանցից շատերը նա կարդում էր գերմաներեն լեզվով: Մի քանի տարվա ընթացքում նա կարդաց Մարքսիզմի կլասիկների բոլոր հիմնական աշխատությունները:



Լենինյան ժողովածուներում հրապարակված են Լենինի աշխատանքային տետրակ-



ները՝ կարդացած գրքերի նրա դրանցումներով և կոնսպեկտներով:

Այդ տետրակներից յերևում է, թե ինչպե՞ս էր կարդում Լենինը, ինչպե՞ս էր նա աշխատում յուրաքանչյուր գրքի վրա, ինչպիսի՞ հսկայական սև աշխատանք էր կատարում նա գիրք, հոդված գրելուց կամ զեկուցում տալուց առաջ:

Գիրքը կարդալով, Վլադիմիր Իլյիչը սովորաբար տետրակում գրում էր նրա համառոտ բովանդակությունը, քաղվածքները, ընթերցանության ժամանակ ծագած սեփական մտքերը: Յերբեմն նա սահմանափակվում էր սոսկ գրքի համառոտ բնութագրումով:

Առանձին մտքեր (հեղինակի կամ սեփական) Լենինն ընդգծում էր յերկակի, յեռակի գծերով: Վորոշ բառեր ընդգծում էր ալիքանման գծով, մյուսները— հաստ գըծով: Վորոշ բառեր առնում էր սովորական և վո՛րոշ բառեր էլ ֆիգուրային փակագծերի մեջ: Այս բոլորը պատահականորեն չէր արվում: Այդ բանը Վլադիմիր Իլյիչին հետագայում օգնում էր արագությամբ գըտնելու այս կամ այն հարցը մշակելու, հոդված գրելու կամ յելույթի նախապատրաստվելու համար անհրաժեշտ տեղը:

Այս կամ այն գրքի կոնսպեկտի վերջում Լենինը տալիս էր ընդհանուր գնահատականը, բնութագրում էր վողջ յերկն ամբողջությամբ վերցրած, մատնանշում էր նրա նշանակությունը։

Լենինի բոլոր աշխատանքային տետրակները վերնագրված և համարակալված են նրա կողմից։ Տետրակի շապիկի վրա կամ նրա առաջին եջում Լենինը գրում եր տետրակի համառոտ ցանկը, վորպեսզի արագությամբ գտնվեր հարկավոր եջը։

Յերբեմն նա պարզապես նշումներ եր անում և իր դիտողություններն եր գրում գրքի լուսանցքներում (յեթե գիրքը պատկանում եր իրեն)։ Նա գրքում ընդգծում եր կարևորագույն տեղերը, լուսանցքներում զանազան նշաններ (բացականչական, հարցական և այլն) եր դնում, ինչպես նաև զանազան նշումներ եր անում, վորոնք արտահայտում եյին նրա վերաբերմունքը դեպի կարդացվածը՝ «լավ ե», «հիանալի», «շատ լավ ե», «վատ ե», «ճիշտ ե» և այլն։ Այսպիսի դիտողություններով զարդարված են նաև Լենինի աշխատանքային տետրակները։

Գրքի վերջի ազատ եջում Լենինը յերբեմն ընդհանուր յեզրակացություն եր գրում և



կազմում եր գրքի կարևորագույն եջերի ցանկը։

Իր նայած և կարդացած գրքերի լենինյան գնահատականները միշտ դիպուկ են, աչքի յեն ընկնում պարզությամբ և սրությամբ։

Գրքեր կարդալով Լենինը վո՛չ միայն կոնսպեկտներ եր կազմում և քաղվածքներ անում, այլև ինքն ել սխեմաներ եր գծում, վիճակագրական աղյուսակներ կազմում։ Նա քաղվածքներ եր կատարում նաև լրագրային հոդվածներից։



Մարքսի և Ենգելսի հիմնական աշխատությունները Լենինը կարդաց յերիտասարդ ժամանակում։ Սակայն դա մարքսիզմի ուսումնասիրման վիթխարի աշխատանքի միայն սկիզբն եր։ Լենինը Մարքսի և Ենգելսի յերկերը կարդում եր մի քանի անգամ։ Կարդում և նայում եր իր կոնսպեկտներին, նոր դիտողություններ եր մտցնում նրանց մեջ, համեմատում եր նոր տվյալների, նոր նյութերի հետ։ Հաճախ նա իր տետրակներում այսպես ել գրում եր՝ «վերադառնալ կրկին անգամ», կամ թե պարզապես՝ «վե-

բաղադրանալ»:

Յեվ, վերադառնալով այդ յերկերին, նա նրանց մեջ իր մտքերի և յերևակայությունների ապացույցներ էր փորձում, մտքեր ու յեզրակացություններ, վորոնց նա հանգում էր բարդ աշխատանքի միջոցով, պատմական նոր եպոխայի ուսումնասիրման նկատմամբ մարքսիստական մեթոդի կիրառման հետևանքով:

Յուրաքանչյուր անգամ, յերբ անհրաժեշտ էր լինում լուծել հեղափոխական պայքարի կարևորագույն հարցեր, Լենինը միշտ, նրա սեփական արտահայտությամբ՝ «խորհրդակցում էր Մարքսի հետ»: Մարքսի հետ Լենինը «խորհրդակցում էր» 1905 թվի հեղափոխության շրջանում, յերբ բուրժուազիայի և նրա արբանյակների— մենշևիկների— դեմ մղվող պայքարում պաշտպանում էր պրոլետարիատի ինքնուրույն, ղեկավար դերը ռուսական բուրժուական-դեմոկրատական հեղափոխության մեջ: Մարքսի հետ Լենինը «խորհրդակցում էր» իմպերիալիստական պատերազմի տարիներին, յերբ առաջ քաշեց իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածելու լոզունգը: Մարքսի հետ Լենինը «խորհրդակցում էր» 1917 թվին, յերբ նա-



խապատրաստում էր Հոկտեմբերյան մեծ գրոհը և մասսաներին մարտի յեր տանում պրոլետարիատի դիկտատուրայի համար: «Մարքսիզմը պետության մասին» հաստ տետրակը, վոր Լենինն սկսել է 1916 թվի վերջերին, իր մեջ պարունակում է Մարքսի և Էնգելսի արտահայտությունները պետության և պրոլետարիատի դիկտատուրայի մասին և Լենինի դիտողություններն այդ հարցի առթիվ:

Լենինը շատ ուշադիր հետևում էր այն բոլորին, ինչ Մարքսի մասին գրում եյին նրա հակառակորդները, բուրժուական «քննադատները», ինչպես նաև ռեֆորմիստներն ու ոպորտունիստները, վորոնք իրենց հայտարարում եյին Մարքսի հետևորդներ, իսկ գործնականում գռեհկացնում ու խեղաթյուրում եյին նրա ուսմունքը:

Կարդալով Կաուցկու և մյուս ռեֆորմիստների յերկերը, Լենինը քննադատական սուր դիտողություններ է անում՝ «ճիշտ չե», «ռեֆորմիզմի մարգարիտ», «ստորություն», «կաշա» և այլն: Մերկացնելով ոպորտունիստների դավաճանությունը, Լենինը շարունակ ցույց է տալիս, թե ինչպես են նրանք խեղաթյուրում Մարքսին,

սխալ են մեջբերում նրա յերկերը, ժուլիկորեն աղավաղում են ցիտատները։

Առանձին հարցերի ուսումնասիրման ժամանակ Լենինը ծանոթանում եր բուրժուական գիտնականների յերկերի հետ, դեն նետելով ամեն խորթը և վերցնելով այն բոլորը, ինչը կարող եր պետք գալ։ Թվական և փաստական նյութ վերցնելով բուրժուական հեղինակների գրքերից ու հոդվածներից, Լենինը խնամքով ստուգում եր դրանք, հաշվումներ, հաշվարկումներ եր կատարում, վիճակագրական աղյուսակներ եր կազմում, և այնուհետև գրում եր յեզրակացությունները, վորոնք ամբողջությամբ հերքում եյին հեղինակի յեզրակացությունները, հարվածում եյին այդ հեղինակին նրա իսկ սեփական թվերով ու տըվյալներով։



Իր թեորետիկական աշխատանքը Լենինը չեր ընդհատում վո՛չ բանտում, վո՛չ աքսորում, վոչ եմիգրացիայում։

Հայտնի յե, վոր Լենինի «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում» կլասիկական



աշխատությունը մասամբ պատրաստվել ե բանտում և գրվել ե սիբիրյան աքսորում։ Այդ գիրքը գրելու համար Վ. Ի. Լենինը հսկայական քանակությամբ հետազոտություններ և վիճակագրական նյութեր ուսումնասիրեց Ռուսաստանի եկոնոմիկայի վերաբերյալ։

Ա. Ի. Ուլյանովա-Յելիզարովան Լենինի մասին իր հիշողություններում գրում ե՝ «իրեն վարժեցնելով կանոնավոր աշխատանքի, նա պարապմունքի մեջ ընդմիջումներ թույլ չեր տալիս նույնիսկ այն ժամանակ, յերբ նրանք սովորաբար անխուսափելի եյին համարվում, որինակ, ուղևորության ժամանակ, կամ անորոշ սպասողական դրության մեջ։ Այսպես, նա վոչ միայն այն ամսվա ընթացքում, վորը նա անցկացրեց Կրասնոյարսկում նշանակումի սպասելով, ամեն որ գնում եր վաճառական Յուդինի գրադարանը, վորը քաղաքից յերեք վերստ հեռու յեր գտնվում, այլև նույնիսկ այն յերեք որը, վորը նրան թույլ եր տրվել անցկացնելու հայրենական տանը, Մոսկվայում,— հնար գտավ մասամբ ոգտագործելու՝ Ռումյանցևի գրադարանում պարապելու համար»։

Լենինը միշտ շատ խնամքով էր պատրաստում զեկուցումների և այլ հրապարակային ելույթների։ Նա թեմայի վերաբերյալ փաստական մեծ նյութ էր հավաքում, նախօրոք ուսումնասիրում էր լսարանի կազմը։

Լենինը միշտ կազմում էր իր զեկուցման կամ ճառի մանրամասն պլանը, իսկ երբեմն էլ վողջ ճառն ամբողջությամբ գրում էր։ Այսպես, օրինակ, իր հայտնի ճառը 1918 թվի նոյեմբերի 7-ին, Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի արձանի բացմանը, Լենինը նախօրոք գրեց։ Լենինի զեկուցումների և ճառերի շատ պլաններ հրապարակված են Լենինյան ժողովածուների մեջ։

Յուրաքանչյուր ագիտատոր պետք է սովորի լենինյան աշխատունակությունը, գրքի վրա աշխատելու լենինյան հմտությունը, իր վրա աշխատելու նկատմամբ լենինյան վերաբերմունքը, լենինյան վերաբերմունքը դեպի մասսայի առաջ կատարելիք իր ելույթները։





## ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

